Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների և զեկուցումների համար

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 39-րդ տարեդարձը . . . . . . 1

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ և գրականություն ագիտատորների նոյեմբեր ամսվա զրույցների համար . . . . 45

Նոր գրքեր

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 39-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

39 տարի առաջ մեր երկրի բանվոր դասակարգը, չքավոր գյուղացիության հետ դաշինք կնքած, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեծ Լենինի գլխավորությամբ ճեղքեց իմպերիալիզմի ճակատը և երկրագնդի մեկ վեցերորդ մասում հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա:

1917 թվականի հոկտեմբերի 26-ին (նոյեմբերի 8) Սովետների համառուսական 2-րդ համագումարի ամբիոնից ամբողջ աշխարհով մեկ տարածվեց բոլոր երկրների պրոլետարների և ճնշվածների առաջնորդ Վ. Ի. Լենինի ձայնը մարդկության պատմության մեջ նոր դարագլխի՝ պրոլետարական ռևոլյուցիաների և սոցիալիզմի դարագլխի սկսվելու մասին:

Աշխատավոր մասսաները պատմության մեջ առաջին անգամ ստեղծեցին իրենց՝ ժողովրդական իշխանությունը, [illegible]





կան և գյուղացիական կառավարությունը, որի նախագահ ընտրվեց Վ. Ի. Լենինը։

Իրականացնելով հաղթական սոցիալիստական ռևոլյուցիան, Կոմունիստական պարտիան մեր երկիրը փրկեց կործանումից, նրան ազատեց համաշխարհային իմպերիալիզմից կախում ունեցող կիսագաղութային երկրի վիճակից, սովետական ժողովրդին դուրս բերեց մարդկության պատմության մեջ դեռևս չտեսնված սոցիալիստական վերափոխումների լայն ճանապարհ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մեծագույն նշանակություն ունեցավ ոչ միայն մեր երկրի ժողովուրդների համար, այլև ամբողջ աշխարհի աշխատավորների կյանքում։ Այն մահացու վերք հասցրեց կապիտալիզմին, խարխլեց և թուլացրեց իմպերիալիզմի հիմքերը, հեշտացրեց միջազգային պրոլետարիատի պայքարը կապիտալիզմի դեմ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ամբողջ աշխարհի պրոլետարիատին վստահություն ներշնչեց իր ուժերի և իր գործի հաղթանակի նկատմամբ, ցույց տվեց, որ աշխատավորները կարող են վերացնել շահագործողներին և կառուցել նոր կյանք։ Ոչնչացնելով ազգային ճնշումը մեր երկրում և



հռչակելով ժողովուրդների բարեկամության և իրավահավասարության քաղաքականություն, Սովետական իշխանությունը ցույց տվեց աշխարհի ճնշված ժողովուրդների ազատագրման իսկական ուղին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ ծնունդ առած սովետական երիտասարդ պետությունը պաշտպանեց մեր երկրի ժողովուրդների ազատությունն ու անկախությունը օտարերկրյա իմպերիալիստների և ռուսական սպիտակ գվարդիականների միացյալ ուժերի դեմ մղվող դաժան մարտերում։

Հաջողությամբ վերականգնելով համաշխարհային պատերազմի և քաղաքացիական կռիվների ժամանակ քայքայված ժողովրդական տնտեսությունը, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ խաղաղ սոցիալիստական շինարարության։

Վ. Ի. Լենինը մշակեց տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր, հզոր սոցիալիստական տերության վերածելու գիտականորեն հիմնավորված ծրագիրը, մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հանճարեղ պլանը, նրա ձևերը և միջոցները, մշակեց բանվոր դասակարգի և

գյուղացիության դաշինքի ձևերը, ժողովուրդների իսկական բարեկամության ստեղծման միջոցառումները։

Կոմունիստական պարտիան անշեղորեն ղեկավարվում էր Վ. Ի. Լենինի այն ցուցումներով, որ մենք ունենք այն ամենը, ինչ անհրաժեշտ է լիակատար սոցիալիստական հասարակություն կառուցելու համար։

Նախապատերազմյան հնգամյակների տարիներին սովետական ժողովուրդը իրականացրեց երկրի ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը։ Կոմունիստական պարտիան հաղթահարեց բոլոր դժվարությունները, ջլատեց դասակարգային թշնամիների դիմադրությունը, գաղափարապես ջախջախեց պարտիայի ներսում եղած հակալենինյան խմբավորումները և ապահովեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում լենինյան պատգամների կենսագործման, Կոմունիստական պարտիայի կազմակերպող և ուղղություն տվող մեծ գործունեության արդյունքն է, բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի հերոսական և անձնվեր աշխատանքի արդյունքը։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին սովետական ժողովուրդը և նրա փա-



ռապանծ բանակը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները, մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, Եվրոպայի և Ասիայի ժողովուրդներին փրկեցին ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։

Երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմի կրած պարտության հետևանքով աշխարհում աճեցին և ամրապնդվեցին սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերը, թուլացան իմպերիալիզմի և ռեակցիայի դիրքերը։

Հետպատերազմյան տարիներին սովետական ժողովրդից հսկայական ջանքեր պահանջվեցին պատերազմի ծանր վերքերը բուժելու և ժողովրդական տնտեսության հումկու վերելք ստեղծելու համար։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները պատվով կատարեցին չորրորդ և հինգերորդ հնգամյակների առաջադրանքները, չտեսնված կարճ ժամկետում վերականգնեցին ժողովրդական տնտեսությունը և առաջ շարժեցին սովետական էկոնոմիկայի, տեխնիկայի և կուլտուրայի բոլոր ճյուղերը։ Սովետական Միության աշխատավորները՝ զինված ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներով, ան-

խորտակելի հզորությամբ և ստեղծագործական ուժով լի, անձնվիրաբար պայքարում են վեցերորդ հնգամյա պլանի իրականացման համար, հաջողությամբ առաջ ընթանալով կոմունիստական հասարակարգի կառուցման ուղիով։

Երեսունինը տարի է ինչ գոյություն ունի Սովետական պետությունը։ Պատմական տեսակետից դա մեծ ժամանակամիջոց չէ։ Սակայն այդ տարիները հագեցված են այնպիսի մեծագույն նշանակություն ունեցող իրադարձություններով, որոնցից յուրաքանչյուրը սովետական կարգի կենսական ուժի և ամրության լուրջ փորձություն է եղել։ Սովետական հասարակական և պետական կարգը դիմացել է բոլոր փորձություններին, զարգացել և ամրապնդվել է սոցիալիզմի ու կոմունիզմի համար մղվող պայքարում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ հանդիսացող Սովետական իշխանությունը ստեղծել է բոլոր հնարավորությունները ժողովրդի ստեղծագործական հսկայական եռանդի դրսևորման համար։ Նա շարժման մեջ է դրել ժողովրդական զանգվածների անսպառ ուժերը, միլիոնավոր մարդկանց ներգրավել պետության գիտակցական կառավարման, սոցիալիզմի կառուցման գործում։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի երեսունիններորդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման համար մղվող պայքարում, տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերված մեծ հաջողություններով։

Մեծ Հոկտեմբերի երեսունութերորդ տարեդարձից մեզ բաժանող մեկ տարին լի էր վիթխարի նշանակություն ունեցող իրադարձություններով, որոնցից ամենանշանավորը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարն էր։

ՍՄԿՊ XX համագումարը պարտիայի, սովետական ժողովրդի, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման պատմության մեջ մտավ որպես ամենանշանավոր իրադարձություններից մեկը։ Համագումարը ամբողջ ուժով ցուցադրեց պարտիայի անխախտ միասնությունը, նրա համախմբվածությունը Կենտրոնական Կոմիտեի շուրջը, հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին։

Համագումարն ամփոփեց պարտիայի գործունեության հոյակապ արդյունքները վերջին երեք տարվա ընթացքում և հասարա-

կական կյանքի երևույթների խոր վերլուծության հիման վրա նոր ձևով դրեց ու լուծեց տնտեսական ու քաղաքական մի շարք կարևոր պրոբլեմներ, մարքսիստական-լենինյան թեորիայի արմատական հարցեր։

Լենինյան ուղղամտությամբ և սկզբունքայնությամբ Կենտկոմը պարտիայի և ամբողջ ժողովրդի առջև բացահայտեց գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացման գործում պարտիական և պետական աշխատանքում եղած թերությունները, վճռաբար մերժեց հինը, իր դարն ապրածը, ուղի հարթեց նորի, առաջավորի համար։

Համաժողովրդական շահը նկատի ունենալով, պարտիան և նրա լենինյան Կենտկոմը ժամանակին մշակեցին արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման, Սովետական Միության հզորության հետագա ամրապնդման, խաղաղությունն ամբողջ աշխարհում պահպանելու համարձակ ու խելացի միջոցառումներ։ Այդ միջոցառումներն այժմ հաջողությամբ կենսագործվում են։

ՍՄԿՊ XX համագումարը պարտիայի և սովետական ժողովրդի առջև տնտեսական, քաղաքական, կուլտուրական գործունեության բոլոր ասպարեզներում վիթխարի խըն-



դիրներ դրեց, որոնք ուղղված են ամենից առաջ տնտեսական հիմնական խնդրի կատարման նպատակին, այն է՝ հասնել և անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության տեսակետից և դրանով իսկ վճռական հաղթանակ ձեռք բերել կապիտալիզմի հանդեպ տնտեսական խաղաղ մրցության մեջ։

Վեցերորդ հնգամյա պլանը կարևորագույն քայլ է այդ մեծ խնդրի իրականացման ճանապարհին։ Ինչպես հայտնի է հնգամյակի գլխավոր խնդիրներն են՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման, տեխնիկական անընդհատ պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա ապահովել ժողովրդական տնտեսության ճյուղերի հետագա հզոր աճ, իրականացնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելք և այդ հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացման։

Պարտիայի XX համագումարից հետո շատ ժամանակ չի անցել, բայց այդ կարճ ժամանակամիջոցում սովետական ժողովուրդը խոշոր հաջողությունների է հասել ժողովրդա-

կան տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման, իր նյութական և կուլտուրական բարեկեցության հետագա բարձրացման գործում։

Արդյունաբերական արտադրության բացարձակ չափերով Սովետական Միությունը արդեն շատ ու շատ առաջ է անցել Եվրոպայի առավել զարգացած բոլոր կապիտալիստական երկրներից և այժմ ունի Եվրոպայի ամենահզոր, բազմակողմանի զարգացած ծանր արդյունաբերությունը։

1955 թվականին Սովետական Միությունը ձուլել է ավելի շատ պողպատ և ստացել ավելի շատ էլեկտրաէներգիա, քան Անգլիան և Արևմտյան Գերմանիան՝ միասին վերցրած։

ՍՍՌՄ-ը ավելի շատ արտադրական սարքավորում է թողարկում, քան Անգլիան, Արևմտյան Գերմանիան և Ֆրանսիան։

1960 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, մեր արդյունաբերությունը կթողարկի ավելի քան 40 անգամ շատ արտադրանք։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր 9 օրում նա կթողարկի այնքան արտադրանք, որքան նախառևոլյուցիոն Ռուսաստանն արտադրում էր մի ամբողջ տարում։

Վեցերորդ հնգամյակում կկառուցվեն մոտ 6000 խոշոր արդյունաբերական ձեռնարկու-



թյուններ, ստեղծվելու է ՍՍՌՄ Եվրոպական մասի միասնական էներգոսիստեմ։ Արդյունաբերության զարգացման մասին են վկայում թեկուզ 1956 թվականի առաջին կիսամյակի արդյունքները։ Համախառն արտադրանքի արտադրության բնագավառում առաջին կիսամյակի պլանը արդյունաբերության մեջ ամբողջությամբ վերցրած կատարվեց 102 տոկոսով։ Արդյունաբերության աշխատողները հասել են արտադրության ծավալի հետագա աճման և արդյունաբերության աշխատանքի որակական ցուցանիշների բարելավման։

ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 12 տոկոսով։

Արդյունաբերական արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը 1956 թվականի առաջին կիսամյակում, 1955 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կազմել է չուգուն՝ 109 տոկոս, պողպատ՝ 108 տոկոս, գլանվածք՝ 107 տոկոս՝ ածուխ՝ 110 տոկոս, նավթ՝ 119 տոկոս, էլեկտրոէներգիա՝ 114 տոկոս։ Հնգամյակում սահմանված են աշխատանքի ար-

տադրողականության աճի հետևյալ առաջադրանքները. արդյունաբերության մեջ առնվազն 50 տոկոսով, շինարարության մեջ առնվազն 52 տոկոսով, երկաթուղային տրանսպորտում մոտ 34 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, արդյունաբերության մեջ աճել է 8 տոկոսով, շինարարության մեջ՝ 10 տոկոսով։

Մեր երկրում մեծ աշխատանք է կատարվում շինարարության բնագավառում։ Այդ նպատակով 1956—1960 թվականների համար ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պետական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը սահմանված է 990 միլիարդ ռուբլի կամ 67 տոկոսով ավելի, քան հինգերորդ հնգամյակում։ Շատ կարևոր խնդիրներ են դրված տրանսպորտի աշխատողների առջև։ Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է տրանսպորտի տեխնիկական մակարդակի հետագա վերելք, երկաթուղիների լայն էլեկտրիֆիկացում և տրանսպորտի հագեցում ժամանակակից, առավել պրոգրեսիվ լոկոմոտիվներով, նավերով, ավտոմոբիլներով, ինքնաթիռներով և այլն։



Երկաթուղիների բեռնաշրջանառությունը 1955 թվականի համեմատությամբ ավելանալու է 42 տոկոսով, լայնորեն ներդրվելու են էլեկտրաքարշերը և ջերմաքարշերը, կառուցվելու է 6.500 կիլոմետր նոր երկաթգիծ, 6.600 կմ. կրկնակի ուղիներ։ Կառուցվելու է Ալմա-Աթայի շրջան-պետսահման նոր երկաթգիծը, որը կապահովի ՍՍՌՄ կապը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ, նոր ուղղությամբ։

Ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացվելու է մոտ 2 անգամ, ուղևորների փոխադրումները՝ 3—3,5 անգամ, ընդլայնվելու է ավտոմոբիլային ճանապարհների շինարարությունն ու վերակառուցումը։

Լայն հեռանկարներ են բացվում տրանսպորտի նաև մյուս տեսակների և կապի զարգացման համար։

Նախահոկտեմբերյան այս օրերին բուռն թափով ծավալվում է սոցիալիստական մրցությունը։ Արդյունաբերության աշխատողները գործադրում են բոլոր ջանքերը երկրին ավելի շատ վառելիք, մետաղ, մեքենաներ, սարքավորումներ, էլեկտրաէներգիա տալու համար։ Այդ նշանաբանով են աշխատում

Կուզնեցկի, Սվերդլովսկի մետալուրգները, Դոնբասի ածխահատները, Բաշկիրիայի նավթագործները։

Նման օրինակներով հարուստ է մեր երկրի աշխատավորների կյանքի յուրաքանչյուր օրը, յուրաքանչյուր ժամը։

Մեծ Հոկտեմբերի 39-րդ տարեդարձը քաղաքական և աշխատանքային ակտիվության պայմաններում են դիմավորում գյուղատնտեսության աշխատողները։

ՍՄԿՊ XX համագումարը խնդիր դրեց 6-րդ հնգամյակում հացահատիկի համախառն բերքը հասցնել տարեկան 11 միլիարդ փթի, տեխնիկական կուլտուրաների արտադրությունը ավելացնել 30—50 տոկոսով, կրկնակի չափով ավելացնել բանջարեղենի, մսի և կաթի արտադրությունը։ Նախատեսված է աշխատանքի արտադրողականությունը ավելացնել սովխոզներում 70 տոկոսով, կոլտնտեսություններում 100 տոկոսով։

Գյուղատնտեսության հետ մնալը վերացնելու ուղղությամբ պարտիայի և կառավարության միջոցառումները տվել են առաջին խոշոր արդյունքները։ Պայմաններ են ստեղծվել գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի հետագա վերելքի համար։



1956 թվականին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները կազմեցին 194 միլիոն հեկտար, որից 37 միլիոն հեկտար ավելացել է միայն վերջին 3 տարում, ընդ որում ցորենի ցանքատարածություններն աճել են 14 միլիոն հեկտարով, եգիպտացորենինը՝ 20 միլիոն հեկտարով։

Ընթացիկ տարում կոլտնտեսությունները, ՄՏ կայանները և սովխոզները չնայած ուշ գարնանը, հաջող կատարեցին գարնանացանը և գերակատարեցին ցանքի պլանը։ 1955 թվականի համեմատությամբ գարնանացան ցորենի ցանքատարածությունները ավելացան 7 միլիոն հեկտարով, եգիպտացորենինը՝ 6 միլիոն հեկտարով։ Հացահատիկի արտադրության ավելացման կարևոր պայմանը խոպան և խամ հողերի յուրացումը և բերքատվության բարձրացումն է։ 1956 թվականի գարնանը նոր յուրացված հողերում հիանալի բերք ստացվեց, որը զգալի չափով ավելացրեց հացահատիկի ընդհանուր ռեսուրսները երկրում։ Յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը 90—100 փթի հասցնելու դեպքում այժմյան գոյություն ունեցող տարածությունների վրա կարելի է հավաքել 11—12 մի-

միլիարդ փութ ցորենի համախառն բերք։ Իսկ այդ խնդիրը մեզ մոտ ի վիճակի է լուծելու ամեն մի տնտեսություն։ Հենց այժմ մեր երկրի բոլոր շրջաններում կան կոլտնտեսություններ, որոնք ավելի բարձր բերք են ստանում։

Կոլտնտեսային դաշտերում հավաքված առատ բերքը լիակատար հիմք է տալիս մեզ ասելու, որ այս տարի հաջողությամբ կբավարարվեն բնակչության բոլոր հիմնական պահանջմունքները հացահատիկի ասպարեզում։ Միայն Ռուսաստանի Ֆեդերացիայի կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանը հանձնել ու վաճառել են երկու միլիարդ չորս միլիոն փութ հացահատիկ՝ 319 միլիոն փթով ավելի, քան նախատեսված է պետական պլանով։ Ղազախական ՍՍՌ-ն Հայրենիքին տվել է մեկ միլիարդ 340 հազար փութ հացահատիկ՝ պետական պլանը գերազանցելով 402 միլիոն փթով։

Զգալի տեղաշարժեր են կատարվել նաև անասնապահության զարգացման գործում։ Ավելացել է կոլտնտեսությունների և կոլտնտեսականների անձնական սեփականությունը կազմող անասունների գլխաքանակը։ Կաթի արտադրությունը կոլտնտեսություններում 1955 թվականի հոկտեմբերից մինչև





1956 թվականի հուլիսի մեկն ընկած ժամանակամիջոցում, 1954—55 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 45 տոկոսով, մեկ կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացել է 40 տոկոսով։ Առ 1-ը հուլիսի 1956 թվականի կոլտնտեսություններում բտվում էր 4,1 միլիոն գլուխ խոզ, կամ գրեթե 2,5 անգամ ավելի, քան առ 1-ը հուլիսի 1955 թվականի։

Անասնաբուծական մթերքների արտադրության աճը թույլ տվեց մեծ չափով ավելացնել այդ մթերքների պետական մթերումները ու գնումները։ 1956 թվականի առաջին կիսամյակում ՍՍՌՄ-ում ամբողջությամբ վերցրած մթերվել ու գնվել է 38 տոկոսով ավելի կաթ, քան անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանում։ Մեծ են բնակչությանը մսեղենով և կաթնեղենով, առանձնապես կաթով ապահովելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի և ՍՄԿԿ XX համագումարի որոշումների կատարման ուղղությամբ մեր ձեռք բերած հաջողությունները։ Եթե առ 20-ը հուլիսի 1955 թվականի մթերվել էր 5,918 [illegible] տոննա կաթ, ապա 1956 թվա[illegible]-

կամիջոցում մթերվել է 9,320 հազար տոննա, 1953 թվականին մթերված 976 հազար տոննայի դիմաց։ 1956 թվականին մթերվել է 1,117 հազար տոննա միս։

Ներկայումս երկրի շատ քաղաքներում կաթի, յուղի ու կաթնամթերքների պահանջն ապահովվում է գրեթե լրիվ։ Պարտիան խնդիր է դրել, որ կաթով ու կաթնամթերքով, կարագով ու պանրով ապահովվեն երկրի բոլոր քաղաքները։ Ամենամոտ ապագայում կլուծվի երկրի բնակչությանը մսով ու մսամթերքով լրիվ ապահովելու հարցը։

Զգալիորեն ընդարձակվել են շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները։ Այս տարի ավելի շատ շաքարի ճակնդեղ կհավաքվի, ուստի և շատ շաքար կարտադրվի, քան արտադրվում էր անցյալ և նախանցյալ տարիներին։ Մեր կոլտնտեսականները աճեցրել ու հավաքում են կարտոֆիլի և բանջարանոցային կուլտուրաների բարձր բերք։

1956 թվականին գյուղատնտեսության մեջ ձեռք են բերվել այնպիսի հաջողություններ, որոնք վկայում են, որ վեցերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կկատարվի։ Մեզ մոտ, ամեն օր ուրախալի լուրեր են ստացվում կոլտնտեսային գյուղի աշխատավորների ձեռք բերած հաջողությունների մասին։



Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ շատ ռեսպուբլիկաներ ու մարզեր ժամկետից շուտ և բարձր որակով են կատարել պետությանը հաց, կաթ, միս և գյուղատնտեսական այլ մթերքներ հանձնելու իրենց պարտավորությունները։ Հանրային անասնաբուծության զարգացման գործում առանձնապես մեծ հաջողությունների է հասել Ուկրաինական ՍՍՌ-ն, որը ժամկետից 4 ամիս շուտ է կատարել կաթի մթերումների ու գնումների տարեկան պլանը, պետությանը հանձնելով ու վաճառելով երեք միլիոն 234 հազար տոննա կաթ, կամ 1 միլիոն տոննայով ավելի, քան անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցում։ Ուկրաինայի շատ կոլտնտեսություններ, սովխոզներ և որոշ շրջաններ արդեն այս տարի հասել են կաթի արտադրության 1960 թվականի համար սահմանված մակարդակին։

Այս բոլորը հիմք են տալիս մեզ ասելու, որ այս տարի հաջողությամբ կվերացնենք գյուղատնտեսության ետ մնալը, դա ուղղակի և անմիջականորեն կանդրադառնա ժողովրդի կենսամակարդակի բարձրացման վրա։

Վեցերորդ հնգամյակում զգալիորեն բարձրացվելու է գյուղատնտեսության մեքենա-

յացման մակարդակը։ 1956—1960 թվականներին գյուղատնտեսությունը ստանալու է մոտավորապես 1.650 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), այդ թվում շարահերկ մշակության 680 հազար տրակտոր (ֆիզիկական հաշվարկությամբ), 560 հազար հացահատիկային կոմբայն և հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքի 180 հազար հնձիչ, եգիպտացորեն և սիլոսային կուլտուրաներ հավաքող 250 հազար կոմբայն և այլն։

1956 թվականի առաջին կիսամյակում գյուղատնտեսությունն ստացել է 118 հազար տրակտոր, այդ թվում՝ 50 հազար հերկի տրակտոր, 62 հազար բեռնատար ավտոմոբիլ, 28 հազար հացահատիկային կոմբայն, 5 հազար կարտոֆիլահավաք կոմբայն, եգիպտացորենի և սիլոսային կուլտուրաների հավաքման 10 հազար կոմբայն, 64 հազար տրակտորային գութան, 28 հազար տրակտորային շարքացան, 64 հազար-տրակտորային կուլտիվատոր և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ։

Գյուղատնտեսության զարգացման հաջողությունները ձեռք են բերված միլիոնավոր սովետական մարդկանց անձնվեր աշխատանքի շնորհիվ, պարտիայի քաղաքական ու



կազմակերպչական վիթխարի աշխատանքի շնորհիվ։

Պարտիան և կառավարությունը մի շարք միջոցառումներ են մշակել գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում եղած թերությունները վերացնելու, կոլտնտեսային աշխատավորության նախաձեռնությունը զարգացնելու համար։

Զգալիորեն բարձրացվել է գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը. վերացվել է կենտրոնից իրագործվող բյուրոկրատական, գործի համար վնասակար պլանավորումը և իրենց՝ կոլտնտեսություններին է հանձնվել ցանքատարածությունների ու կուլտուրաների բերքատվության, անասունների գլխաքանակի և անասնաբուծության մթերատվության պլանավորումը, կենտրոնին թողնելով միայն մթերումների չափերի և պետությանը արտադրանք վաճառելու չափերի սահմանումը։

«Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության և կոլտնտեսային արտադրության կազմակերպման ու արտելի գործերի կառավարման ասպարեզում կոլտնտեսականների նախաձեռնության հետագա զարգացման մասին և կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման ու կոլտնտեսու-

թյուններում աշխատանքի լրացուցիչ վարձատրության մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը ուղղված է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունն ամեն կերպ զարգացնելու և ամրապնդելու, գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքի ծրագիրը հաջողությամբ իրականացնելու նպատակին։ Դրանով իսկ վերացվեցին այն բոլոր խոչընդոտները և արգելքները, որոնք սահմանափակում էին տեղերի նախաձեռնությունը, հնարավորություն չէին տալիս բարձրացնելու արտելի անդամների ձեռներեցությունը, նրանց ակտիվ մասնակցությունը արտադրական կյանքին և արտելի կառավարման գործին։

Էական փոփոխություններ են մտցվում ՄՏ կայանների աշխատանքում։ Նրանք փոխադրվում են տնտհաշվարկի, որը կբարձրացնի նրանց նյութական պատասխանատվությունը կոլտնտեսային արտադրության մեջ։ Պայմաններ են ստեղծված սովխոզները օրինակելի, եկամտաբեր տնտեսություններ դարձնելու համար։

Այս միջոցառումները ապահովում են գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացումը, է՛լ ավելի են նպաստում



մեր երկրի բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդմանը։

Արդյունաբերության և գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների հիման վրա բարձրանում է սովետական ժողովրդի կենսամակարդակը։ Հինգերորդ հնգամյակի տարիներին ՍՍՌՄ ազգային եկամուտը ավելացել է 68 տոկոսով, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը աճել է 39 տոկոսով, կոլտնտեսականների ռեալ եկամուտները՝ 50 տոկոսով։ 1955 թվականի պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցը բնակչությանը 1,9 անգամ ավելի շատ ապրանքներ է վաճառել, քան 1950 թվականին։ Չնայած այդ հաջողություններին, բնակչության կենսամակարդակը դեռևս չի համապատասխանում սոցիալիստական կարգի հնարավորություններին և սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքներին։

Վեցերորդ հնգամյա պլանը կարևորագույն առաջընթաց քայլ կլինի այդ խնդրի լուծման ճանապարհին։ Բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը միջին հաշվով բարձրացվելու է մոտավորապես 30 տոկոսով։ Հողագործության և անասնաբուծության արտադրանքի զգալի ավելացման և կոլտնտե-

ություններն աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները ավելանալու են միջին հաշվով առնվազն 40 տոկոսով, ամենից առաջ հանրային տնտեսությունից ստացվող եկամուտների ավելացման հաշվին։

Հնգամյակի ընթացքում պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը ավելանալու է 50 տոկոսով։ Այժմ արդեն այս ասպարեզում առկա են առաջին հաջողությունները։

1956 թվականի առաջին կիսամյակին, 1955 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, բրդե գործվածքների արտադրությունն ավելացել է 24 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 51 տոկոսով, ժամացույցներինը՝ 15 տոկոսով, տնային սառցարաններինը՝ 48 տոկոսով, լվացքի մեքենաներինը՝ 87 տոկոսով, կարի մեքենաներինը՝ 22 տոկոսով և այլն։

Մսի արտադրությունն այս տարվա առաջին կիսամյակում 1955 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացել է 19 տոկոսով, կենդանական յուղինը, պանրինը և այլ կաթնամթերքներինը՝ 38 տոկոսով, հրուշակեղենինը՝ 14 տոկոսով, պա-



հածոներինը՝ 25 տոկոսով, օճառինը՝ 20 տոկոսով։

Պարտիան և կառավարությունը մշակել և կենսագործում են առաջնահերթ միջոցառումների մի ամբողջ սիստեմ ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ։

Վեցերորդ հնգամյակում պետք է իրականացվի անցումը 7-ժամյա աշխատանքային օրվա, իսկ ածխարդյունաբերության և լեռնահանքային արդյունաբերության ստորերկրյա աշխատանքներում զբաղված առաջատար պրոֆեսիաների տեր բանվորների համար՝ 6 ժամյա աշխատանքային օրվա։ 1956 թվականի հուլիսի մեկից 6-ժամյա աշխատանքային օր է սահմանված 16-ից մինչև 18 տարեկան հասակի դեռահասների համար։ Մարտի 10-ից նախահանգստյան և նախատոնական օրերին աշխատանքային օրը կրճատված է երկու ժամով, առանց պակասեցնելու աշխատավարձը։ 1957 թվականի հունվարի մեկից բարձրացվելու է ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը։ Վերացվել է ուսման վարձը միջնակարգ դպրոցների բարձր դասարաններում և բարձրագույն ուսումնական հաստատություններում, ավելացվել են հղիության և ծննդաբերության կապակցու-

թյամբ կանանց տրվող արձակուրդները, ըղձալիորեն ընդլայնվել է մանկական հիմնարկների և հասարակական սննդի ձեռնարկությունների ցանցը, ստեղծվել են գիշերօթիկ դպրոցներ, կառուցվել են հաշմանդամների ու զառամյալների նոր տներ և այլն։

Ընթացիկ տարվա խոշորագույն միջոցառումը կենսաթոշակների գործի կարգավորումն է, ըստ որի մեծ չափերով ավելացել են ցածր կարգի կենսաթոշակները։

Այս բոլոր միջոցառումները ժողովրդի բարօրության նկատմամբ պարտիայի և կառավարության լենինյան հոգատարության վառ արտահայտությունն են։ Մեր մոլորակի ամեն մի ազնիվ քաղաքացի նորից ու նորից համոզվում է նրանում, որ սոցիալիզմի երկրում պետության բարձրագույն օրենքը ժողովրդի բարեկեցության բարձրացումն է։ Պարտիայի քաղաքականությունը և նրա ամբողջ պրակտիկ գործունեությունը ուղղված է այն բանին, որ սովետական մարդու կյանքը գնալով է՛լ ավելի լավանա, որ նա ստանա այն ամենը, ինչ անհրաժեշտ է իր բազմակողմանի զարգացման համար։

Սովետական ժողովուրդը պարտիայի և կառավարության այդ հոգատարությանը



պատասխանում է աշխատանքային ակտիվության նոր հուժկու վերելքով։

Արմատապես բարելավվել է բնակչության բժշկական սպասարկումը։ Ցարական Ռուսաստանի շատ ծայրամասերում չկար ո՛չ բժիշկ և ո՛չ էլ հիվանդանոց։ Այժմ բոլոր ռեսպուբլիկաներում գործում է հիվանդանոցների, պոլիկլինիկաների, ծննդատների լայն ցանց։

1955 թվականի համեմատությամբ, հիվանդանոցային մահճակալների քանակը 1960 թվականին ավելանալու է մոտ 28 տոկոսով, մանկամսուրների տեղերի քանակը՝ 44 տոկոսով, մանկապարտեզների տեղերի քանակը՝ 45 տոկոսով, սանատորիաներինը՝ 10 տոկոսով, հանգստյան տներինը՝ 13 տոկոսով։

Բժշկական բնագավառի աշխատողները անդուլ կերպով աշխատում են բժշկական գիտության հետագա զարգացման, պրոֆիլակտիկայի և բուժման նոր մեթոդներ ու միջոցներ գտնելու վրա։

Պարտիան և կառավարությունը մեծ ուշադրություն են դարձնում բնակարանային շինարարությանը։ 5-րդ հնգամյակի ընթացքում շահագործման է հանձնվել 150 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն և այ-

նուամենայնիվ, բնակարանային հարցում դրությունը դեռևս անբավարար է, ուստի վեցերորդ հնգամյակի կարևորագույն խնդիրներից մեկը բնակարանային շինարարության գործի բարելավումն է։

Վեցերորդ հնգամյակի ընթացքում քաղաքներում, բանվորական ավաններում և գյուղական վայրերում պետական միջոցներով կառուցվելու են մոտ 205 միլիոն քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ, կամ գրեթե երկու անգամ ավելի, քան 5-րդ հնգամյակում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 39-րդ տարեդարձը մեր երկիրը դիմավորում է կուլտուրայի զարգացման բնագավառում ձեռք բերած նոր հաջողություններով։ Սովետական իշխանությունը աշխատավոր մասսաների համար բացել է գիտության և լուսավորության լայն ճանապարհ։ Մեր երկրում տարեցտարի ընդարձակվում է դպրոցների, ակումբների, գրադարանների և կուլտուրական մյուս հիմնարկների ցանցը, ավելանում է գրքերի, ամսագրերի, թերթերի տիրաժը։ Ծաղկել է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների գրականությունը և արվեստը։ Քառասունութ ազգություններ, որոնք մինչև ռևոլյուցիան չու-



նեին գիր և գրականություն, ստեղծել են այն։

Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան Ռուսաստանում թերթերը միայն 24 լեզվով էին լույս ընծայվում, այժմ թերթեր լույս են ընծայվում 80 լեզվով, գրքեր՝ 122 լեզվով։ Թուրքմենստանում մինչև ռևոլյուցիան ոչ մի թերթ լույս չէր ընծայվում, այժմ թուրքմեներեն լեզվով 50-ից ավելի թերթ է լույս տեսնում։

Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների աշխատավորները մայրենի լեզվով կարդում են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, ռուս և համաշխարհային գրականության նշանավոր ներկայացուցիչների ստեղծագործությունները։

Հինգերորդ հնգամյակի վերջում ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ռեսպուբլիկական ենթակայության քաղաքներում, մարզային, երկրամասային և խոշորագույն կենտրոններում ավարտվեց անցումը յոթնամյա կրթությունից ընդհանուր միջնակարգ կրթության։

Վեցերորդ հնգամյակում քաղաքներում և գյուղական վայրերում հիմնականում իրագործվելու է ընդհանուր միջնակարգ կրթու-

թյունը, մեծ ուշադրություն է դարձվելու պոլիտեխնիկական ուսուցմանը։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների կողմից մասնագետների թողարկումը ավելացվելու է մոտ 1,5 անգամ։

Բուռն թափով զարգանալու է սովետական գիտությունը, բարձրանալու է գիտական հիմնարկների դերը արտադրության տեխնիկական պրոգրեսի և կազմակերպման գործում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում ձեռք բերած հաջողություններով է դիմավորում նաև վերածնված հայ ժողովուրդը։ Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Հայաստանը դարձել է զարգացած ինդուստրիալ-կոլտնտեսային ռեսպուբլիկա։ Ստեղծվել են առաջավոր տեխնիկայով հագեցված էներգետիկ, քիմիական, լեռնա-հանքային, մեքենաշինական, շինանյութերի, տեքստիլ-տրիկոտաժի, սննդի և արդյունաբերության այլ ճյուղեր։ Աճել և վերափոխվել են արդյունաբերական կենտրոններ՝ Երևանը, Լենինականը, Կիրովականը, Ալավերդին, Ղափանը,



ստեղծվել են նոր, բարեկարգ քաղաքներ և բանվորական ավաններ։

Բուռն թափով զարգանում է ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերությունը։ Բավական է նշել, որ հինգերորդ հնգամյակի ընթացքում ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների թողարկած արտադրանքի ծավալը ավելացել է 3,3 անգամ, քիմիական արդյունաբերության ձեռնարկություններինը՝ 2,7 անգամ, մեքենաշինական ձեռնարկություններինը՝ 3,4 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,3 անգամ։

Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, գրեթե կրկնապատկվել է, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ աճել է 4,7 անգամ։

Գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների համախառն արտադրանքը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 3,3 անգամ, մեքենաշինության և մետաղամշակման ձեռնարկություններինը՝ 2,6 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 2,3 անգամ։ Այժմ ռեսպուբլիկայի ձեռնարկությունները երկրին տալիս են տասնյակատիկ ա-

վելի գեներատորներ, տրանսֆորմատորներ,
մետաղահատ հաստոցներ, պոմպեր, կոմ-
պրեսորներ և այլն։
Միայն հինգերորդ հնգամյակի ընթացքում
կազմակերպվել են արտադրության մի շարք
նոր ճյուղեր, այդ թվում՝ շարժական էլեկ-
տրակայանների, ագրոշիֆերի, երկաթբետո-
նե կոնստրուկցիաների ու մասերի արտա-
դրությունը։ Կառուցվել և շահագործման են
հանձնվել 40-ից ավելի արտադրական խո-
շոր ձեռնարկություններ։
Ռեսպուբլիկայի աշխատավորները զգալի
հաջողությունների են հասել գյուղատնտե-
սության բոլոր ճյուղերի զարգացման վերա-
բերյալ պարտիայի ձեռնարկած միջոցա-
ռումների կենսագործման ուղղությամբ։
Զգալիորեն ավելացել է հիմնական ա-
նասնաբուծական մթերքների արտադրու-
թյունը, աճել է անասունների գլխաքանակը,
բարձրացել է նրանց մթերատվությունը, ա-
ճել է տեխնիկական կուլտուրաների, բան-
ջարեղենի և կարտոֆիլի համախառն
բերքը, բարձրացել է գյուղատնտեսության
մեքենայացման և էլեկտրիֆիկացման մա-
կարդակը, աճել են կոլտնտեսականների ե-
կամուտները։
Արդյունաբերության և գյուղատնտեսու-



թյան հարաճուն վերելքի ամուր հիմքի վրա
հաջողությամբ զարգանում է թեթև և սննդի
արդյունաբերությունը։ 1955 թվականին
ռեսպուբլիկայի ձեռնարկություններում ար-
տադրվել են, 1950 թվականի համեմատու-
թյամբ, 4,5 անգամ ավելի բրդյա գործ-
վածքներ, 3,3 անգամ ավելի մետաքսե
գործվածքներ, 2,7 անգամ ավելի տրիկոտա-
ժեղեն և այլն։
Մեծ են հայ ժողովրդի նվաճումները ձե-
վով ազգային, բովանդակությամբ սոցիա-
լիստական կուլտուրայի զարգացման գոր-
ծում։ 1914 թվականին Հայաստանում կար
ընդամենը 459 դպրոց՝ 35.000 աշակերտով,
չկար ոչ մի բարձրագույն ուսումնական
հաստատություն, ոչ մի գիտահետազոտա-
կան հիմնարկ։
Այժմ Հայաստանում գործում է 1.184
դպրոց, որտեղ սովորում է 281.000 աշա-
կերտ։ Ռեսպուբլիկայի 12 ստացիոնար և մի
շարք հեռակա բուհերում սովորում են 15
հազարից ավելի ուսանողներ։ Յուրաքան-
չյուր 10 հազար բնակչին մեր ռեսպուբլի-
կայում 16 անգամ ավելի ուսանող է ընկ-
նում, քան Թյուրքիայում։ Հայկական ՍՍՌ-ն
ունի Գիտությունների ակադեմիա, որը
տասնյակ գիտա-հետազոտական հիմնարկ-

ներ է միավորում։ Հայ ժողովուրդը ստեղծել է բարձր զարգացած կուլտուրա, գրականություն և արվեստ, որը փայլուն հաջողությամբ դրսևորվեց այս տարի Մոսկվայում կազմակերպված Հայկական ՍՍՌ արվեստի և գրականության տասնօրյակի ընթացքում։ Նոր հնգամյակում ապահովվում է Սովետական Միության մեծ ընտանիքում միավորված բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա բուռն վերելքն ու զարգացումը։ Ահա թե ինչու ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին վեցերորդ հնգամյա պլանի դիրեկտիվները մեծ գոհունակությամբ ընդունեց հայ ժողովուրդը, նրա մեջ տեսնելով լենինյան ազգային քաղաքականության նոր, վառ արտահայտություններից մեկը։

Հնգամյակի ընթացքում ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացվելու է մոտ 1,7 անգամ։ Կավարտվի Սևան—Հրազդան կասկադի հինգ հիդրոկայանների շինարարությունը։ Նախատեսված է սկսել էլեկտրակայանների 2-րդ հզոր կասկադի կառուցումը Որոտան գետի վրա։

Արագ տեմպերով կզարգանա մեքենաշի-



նությունն ու հաստոցաշինությունը, գործիքաշինությունն ու էլեկտրոտեխնիկական արդյունաբերությունը։ Մեքենաշինական և մետաղամշակման մի շարք խոշոր ձեռնարկություններ են կառուցվելու Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ախտայում։ Ռեսպուբլիկայի ծանր ինդուստրիայի կարևոր ճյուղերից մեկի՝ գունավոր մետալուրգիայի արտադրանքը վեցերորդ հնգամյակում կաճի ավելի քան 3 անգամ։

Վեցերորդ հնգամյակում լուրջ խնդիրներ են դրված ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առջև։

1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելանալու է մոտ 1,5 անգամ, մսի արտադրությունը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, համարյա կրկնապատկվելու է բրդի և բոժոժի արտադրությունը։

Ավարտվելու է Թալինի, Արզնի—Շամիրամի ու Կոտայքի ջրանցքների շինարարությունը, սկսվելու է Արզնի—Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը։

Ոռոգվող հողերի ընդհանուր տարածությունը հնգամյակի ընթացքում կավելանա 39 հազար հեկտարով, որի շնորհիվ լայն հեռանկարներ կբացվեն խաղողագործու-

թյան, պտղաբուծության և բանջարաբուծության զարգացման համար։

Վեցերորդ հնգամյակի տարիներին ինչպես մյուս ռեսպուբլիկաներում, այնպես էլ Հայաստանում բուռն թափով զարգանալու է գիտությունը և կուլտուրան։

Սովետական կարգերը, որ ծնունդ առան մեր երկրում Մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ, տարեցտարի ավելի մեծ ազդեցություն են գործում համաշխարհային պատմության ընթացքի վրա։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հռչակած սկզբունքները այժմ դարձել են հսկայական ուժ, որը համախմբում է սոցիալիզմի և դեմոկրատիայի հզոր լագերը, ազատության և պրոգրեսի համար պայքարի հանում նորանոր միլիոնավոր մարդկանց։

Փշրելով իմպերիալիզմի ու ֆեոդալական հարաբերությունների շղթաները, նոր կյանքի ուղին է թևակոխել մեծ Չինաստանը։ Գաղութակալության լուծը թոթափել և ազգային անկախություն են ձեռք բերել Հնդկաստանը, Ինդոնեզիան, Եգիպտոսը, Բիրման և այլն։ Սկսվել է Արաբական երկրների, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների ժողովուրդների վերածնության պրոգրեսը։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայի հաղթանակը և ՉԺՌ-ի ստեղծումը հանդիսանում է ամենախոշոր իրադարձությունը, որը հսկայական ներգործություն ունեցավ Արևելքի երկրների ազատագրական պայքարի զարգացման և համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։

Մեծ Հոկտեմբերի ազատարար դրոշը վեհորեն ծածանվում է Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների վրա, ոգեշնչում է դեռևս կապիտալի լծի տակ հեծող միլիոնավոր մարդկանց իրենց ազատության անկախության համար մղվող պայքարում։

Ահա թե ինչու ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները մեծագույն ոգևորությամբ են նշում պանծալի տարեդարձը, մոբիլիզացնում բոլոր ջանքերը Մեծ Հոկտեմբերի նախագծումները պատվով կատարելու համար։ Սովետական Միության հետ սերտ միասնությամբ, սոցիալիզմի դրոշի տակ, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով ոգեշնչված նոր կյանք են կառուցում Չինաստանը, ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները։

խոշոր են ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունները սոցիալիստական ինդուստրացման գործում, որոնք արտադրության աճի տեմպերով զգալիորեն առաջ են անցել կապիտալիստական երկրներից։

Բավական է նշել, որ 1955 թվականին արդյունաբերական արտադրանքի նախապատերազմյան մակարդակը գերազանցվել է Լեհաստանում ավելի քան 4 անգամ, Բուլղարիայում ավելի քան 5 անգամ, Չեխոսլովակիայում 2 և ավելի անգամ, Հունգարիայում 3,5 անգամ, Ռումինիայում մոտ 3 անգամ, Ալբանիայում ավելի քան 11 անգամ, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում ավելի քան 2 անգամ։

Սոցիալիստական շինարարության ասպարեզում նշանակալից են Հարավսլավիայի նվաճումները։ Արդյունաբերական արտադրանքի նախապատերազմյան մակարդակը այստեղ գերազանցվել է 2,8 անգամ։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում անշեղորեն բարձրանում է ժողովրդի նյութական բարեկեցությունը, աճում է բանվորների թիվը, բարձրանում նրանց ռեալ աշխատավարձը, գյուղացիների եկամուտները։ Ազատագրված աշխատավորները



ավելի ու ավելի են հաղորդակից դառնում կուլտուրային և գիտությանը։

Ընդամենը 7 տարի է անցել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կազմավորման պահից, բայց այդ կարճ ժամանակամիջոցում երկրում վիթխարի փոփոխություններ են կատարվել։

1953 թվականին Չինաստանը ձեռնամուխ է եղել առաջին հնգամյա պլանի կատարմանը, երկրի սոցիալիստական ինդուստրացման գործին։ Հնգամյակի տարիներին պետք է կառուցվեն և վերակառուցվեն բազմաթիվ խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Այժմ այնտեղ կառուցվում է 964 խոշոր ձեռնարկություն։

Չինաստանը արդեն արտադրում է ավտոմոբիլներ, ինքնաթիռներ, շատով կարտադրի շոգեքարշեր, շոգենավեր և տրակտորներ։ Այսպիսով Չինաստանը թևակոխել է սոցիալիստական ծավալուն շինարարության փուլը, հաջողությամբ լուծվում է երկիրը ինդուստրիալ մեծ տերություն դարձնելու, տասնյակ միլիոնավոր մանր գյուղացիական տնտեսությունները կոոպերատիվ ռելսերի վրա փոխադրելու և հասարակությունը սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու խնդիրները։

Տնտեսության և կուլտուրայի զարգացման գործում նշանակալից հաջողությունների են հասել Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Մոնղոլիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները։

Գնալով ավելի ու ավելի է ամրապնդվում սոցիալիզմի երկրների աշխատավորների բարեկամությունը և համագործակցությունը տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։ Սոցիալիզմի երկրների միջև հաստատվել են իրավահավասար, փոխադարձաբար շահավետ առևտրական հարաբերություններ, տեխնիկական փորձի փոխանակություն, համակողմանի փոխօգնություն և ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացում։

Սոցիալիզմի լագերի երկրների տնտեսական, քաղաքական և կուլտուրական համագործակցությունը հանդիսանում է այդ երկրներում սոցիալիզմի հաղթանակի վճռական պայմանը, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման և ամրապնդման կարևոր գործոնը։

Այն ամենը, ինչ մեր երկիրը ձեռք է բերել անցած 39 տարիների ընթացքում, լե-



նինիզմի հաղթանակն է, սովետական ամբողջ ժողովրդի և նրա մարտերում կոփված ղեկավար Կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականության հաղթանակը։

Կոմունիստական պարտիան անշեղորեն կենսագործել է լենինյան պատգամները բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման մասին, կոփել է սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, որի ամրությունը բազմիցս ստուգվել և հաստատված է պատմությամբ։

Կոմունիստական պարտիայի ամբողջ գործունեությունը տոգորված է խորին հավատով դեպի ժողովրդի ռևոլյուցիոն եռանդը, որը պատմության կերտողն է, հասարակության նյութական և կուլտուրական արժեքների ստեղծողը։

Ինչպես հայտնի է, անհատի պաշտամունքը, որ լայն տարածում էր ստացել Ի. Վ. Ստալինի կյանքի և գործունեության վերջին շրջանում, արգելակում էր ժողովրդի նախաձեռնությունը և ակտիվությունը, նսեմացնում պարտիայի և ժողովրդական մասսաների դերը։

Մեր երկրի ծաղկման, սովետական ժո-

ղովրդի բարեկեցության բարձրացման հը-
նարավորությունները մի շարք տարիներ
ամենևին լրիվ չէին օգտագործվում։
Անհատի պաշտամունքի ամենածանր
հետևանքներից մեկը սովետական օրինա-
կանության, պարտիական ու պետական
ղեկավարության լենինյան սկզբունքների
խախտումներն էին։

Անհատի պաշտամունքի հողի վրա պե-
տական ապարատի առանձին օղակներում
առաջ եկան սովետական կարգի էությանը
խորթ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են
թերությունների սվաղումը, պարադայնու-
թյունը, բյուրոկրատիզմը, աշխատավորնե-
րի կարիքների և պահանջների անտեսումը,
սովետական դեմոկրատիայի խախտումնե-
րը։ Այս բոլորը նսեմացնում էին պատ-
մության իսկական կերտողների, ժողովըր-
դական մասսաների դերը, արգելակում աշ-
խատավորների ստեղծագործական նախա-
ձեռնությունը։

Պարտիայի կյանքի և գործունեության
դեմոկրատական սկզբունքների վերականգ-
նումը և հետագա զարգացումը, վարչարա-
րության և ղեկավարման գրասենյակային-
բյուրոկրատական մեթոդների դեմ, թերու-
թյունները կոծկելու և իրականությունը գու-



նազարդելու դեմ, չինովնիկական բարեհո-
գության և ինքնահանգստացման դեմ
քննադատության և ինքնաքննադատու-
թյան ծավալումը ապահովում է պար-
տիական լայն մասսաների քաղաքա-
կան ակտիվության ուժեղացումը, ասպարեզ
տալիս սովետական մարդկանց ստեղծա-
գործական նախաձեռնությանն ու եռանդին,
նպաստում է նորի զգացումն ամեն կերպ
զարգացնելուն, բարձրացնում է անձնական
պատասխանատվությունը հանձնարարված
գործի նկատմամբ։

Այն փաստը, որ մեր պարտիան վճռական
պայքար ծավալեց պարտիական ու պետա-
կան աշխատանքի թերությունների դեմ, ան-
հատի պաշտամունքի հետևանքների հաղ-
թահարման համար, վկայում է պարտիայի
մեծ ուժը, նրա անսասան հավատարմու-
թյունը լենինիզմին, ժողովրդի շահերին
ծառայելու նրա մշտական պատրաստակա-
մությունը։ Կոմունիստական պարտիայի
քաղաքականության կենսագործումը, պար-
տիայի և կառավարության բոլոր որոշում-
ներն ու միջոցառումները սովետական ժո-
ղովուրդը համարում է իր սեփական, հա-
րազատ գործը և անձնվիրաբար պայքարում
է նրանց կենսագործման համար։

*Կոմունիստական պարտիան և սովետա-*
*կան կառավարությունը չեն խնայում իրենց*
*ուժերը և գործադրում են բոլոր ջանքերը՝*
*հանուն սովետական բոլոր մարդկանց եր-*
*ջանիկ, ապահով կյանքի, հանուն մեր երկ-*
*րում կոմունիզմի կառուցման մեծ նպատա-*
*կի իրականացման։*

*Սովետական մարդիկ այժմ ավելի սերտո-*
*րեն են համախմբվել Կոմունիստական*
*պարտիայի շուրջը, քան երբևէ։ Նրանք լի են*
*վճռականությամբ այսուհետև էլ հաստա-*
*տակամորեն կենսագործելու պարտիայի լե-*
*նինյան իմաստուն քաղաքականությունը,*
*սոցիալիստական Հայրենիքի հզորության*
*հետագա ամրապնդման քաղաքականու-*
*թյունը, խաղաղության ու բոլոր երկրների*
*հետ համագործակցելու քաղաքականությու-*
*նը։*

*Մեր Հայրենիքն այժմ գտնվում է իր*
*ստեղծագործական ուժերի ծաղկման շրջա-*
*նում։ Սովետական ժողովուրդը զինված*
*ՍՄԿՊ XX համագումարի պատմական որո-*
*շումներով, համախմբված Կոմունիստական*
*պարտիայի շուրջը՝ առաջ է ընթանում դեպի*
*կոմունիզմ։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՆՈՅԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 39-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ինչ է Սովետական Իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.*— Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռեվոլյուցիայում, *Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Հոկտեմբերյան ռեվոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.*— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

*Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.*— Զեկուցում ՍՄԿՊ XX հա-

մագումարի Դիրեկտիվների մասին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Հայպետհրատ, 1956:*

*2. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.—* Սովետական ռեսպուբլիկայի միջազգային և ներքին դրության մասին, *Երկեր, հատոր 33, էջ 245—266, Հայպետհրատ, 1952:*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.—* Սովետների համառուսաստանյան 9-րդ համագումարը, *Երկեր, հատոր 33, էջ 151—152, Հայպետհրատ, 1952:*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953) Հայպետհրատ, 1953:*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.—* Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956:*

*Դ. Տ. ՇԵՊԻԼՈՎ.—* Լենինիզմը արդի դարաշրջանի հաղթական դրոշն է, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 23-ի համարում:*

*3. ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 39-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.—* Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի



հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956:*

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956:*

Երևանցիների պատվի գործը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 7-ի առաջնորդողը:*

Կոմունիստական պարտիայի քաղաքականության հաղթանակը, *«Պրավդա»-ի 1956 թվականի հոկտեմբերի 15-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 16-ի համարում:*

*4. ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԲՈԼՈՐԻՆ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ *Հայպետհրատ, 1956:*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.—* Ճառ Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան Կենտրոնական ստադիոնում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 1-ի համարում:*

*Ա. Ի. ԿԻՐԻՉԵՆԿՈ.—* Ճառ ՍՄԿՊ XX համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 17-ի համարում:*

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 4-ի առաջնորդողը:*

*5. ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՁՄԵՌՈՒՄԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.*— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, *Հայպետհրատ, 1956, էջ 88—94։*

**ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ,** *Հայպետհրատ, 1956, էջ 46—47։*

*6. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.*— Սովետական Միության միջազգային դրությունը, ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, *էջ 6—45 Հայպետհրատ, 1956։*

*Դ. Տ. ՇԵՊԻԼՈՎԻ* ելույթները Անվտանգության խորհրդում՝ *Սուեզի հարցի վերաբերյալ։*

**Սուեզի հարցի խաղաղ լուծման համար,** *Խաղաղության Պաշտպանության Սովետական կոմիտեի հայտարարությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 30-ի համարում։*

**ՍՍՌՄ և Յապոնիայի հարաբերությունների նորմալացմանը նվիրված սովետա-յապոնական բանակցությունները,** *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի սեպտեմբերի 16-ի համարում։*



**Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Յապոնիայի համատեղ Դեկլարացիան** *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 20-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

**МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД И ДОКЛАДОВ**

39-я годовщина Великой Октябрьской революции . . . . . 1

**В ПОМОЩЬ АГИТАТОРАМ**

Темы и литература для бесед в ноябре месяце . . . . . . 45

Новые книги . . . . . .

---

Խմբագիր՝ Վ. ԲԺՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ԶԱՔԱՐՅԱՆ— «Սուրեն Սպանդարյանը և գրականության հարցերը»: *Գինը 3 ռ. 60 կ., 212 էջ, տիրաժ 2.000։*

Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— «Արագածի լանջից»: *Գինը 1 ռ. 50 կ., 104 էջ, տիրաժ 10.000։*

Կ. ԿՈԼԼՈԴԻ— «Պինոքիոյի արկածները»: *Գինը 4 ռ. 35 կ., 196 էջ, տիրաժ 15.000։*

ԷԴՄՈՆԴՈ ԴԵ ԱՄԻՉԻՍ— «Ապեննիներից մինչև Անդեր»: *Պատմվածքներ։ Գինը 1 ռ. 50 կ., 64 էջ, տիրաժ 15.000։*

ՎԱՂԱՐՇԱԿ ՆՈՐԵՆՑ— «Ճանապարհներ»: *Գինը 4 ռ. 40 կ., 220 էջ, տիրաժ 5.000։*

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 20 1956 г.**

*ՎՖ 06529 Պատվեր 852 Տիրաժ 8440*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*